# ՑԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

## ԵՐԿՐՈՐԴ

## ԸՆԴԴԷՄ ՆՈՐԱՂԱՆԴԻՑ




Ի ՏՊԱՐԱՆԻ
ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԻՒՀԵՆՏԻՍԵԱՆ
-1846-

Գին 40 փարայ։

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ

## ԵՐԿՐՈՐԴ

## ԸՆԴԴԷՄ ՆՈՐԱԴԱՆԴԻՑ

Haytararutian erkrord enddem..

ՏՊԵԱԼ

179

ՀՐ[illegible]ԱՆԱՒ [illegible] ՄԱՏԹԷՈՍԻ ԱՐՔԵՊԻՍԿՈՊՈՍԻ

Ա[illegible]ԱՍԵՐ[illegible]Ի ՎԵՀԱՓԱՌ ՊԱՏՐԻԱՐՔԻ

Կ[illegible]ՏԱՆԴՆՈՒՊՕԼՍՈՅ





Ի ԿՈՍՏԱՆԴՆՈՒՊՕԼԻՍ

Ի ՏՊԱՐԱՆԻ ՅՈՎՀԱՆՆՈՒ ՄԻՒՀԷՆՏԻՍԵԱՆ

—1846—

30 p.

# ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԻՒՆ
## ԵՐԿՐՈՐԴ

Նորաղանդներուն 1846 Յունվար 31 հանած շրջաբերական Թղթոյն գիրը:

Քրիստոնեայ եմք ըսելով զիրենք ուղղափառաց կարգը դնող ինքնահաւան անձինք՝ առանձին գրով իրենց դաւանութիւնը Արքազան Պատրիարքին և ազգային մեծապատիւ Ամիրայից յայտնելով՝ Նիկիական հանգանակին մէջէն բաներ վերցունելու և նոր յաւելուածներ դնելու համարձակելէն ետքը՝ այս անգամ մէկ բողոքոյ գիր մը հրատարակեցին. որ է այս:

Վսեմափայլ Աստուածասէր Ամիրայ.

Ձեր վսեմութեանը մեր խղճմտանքի վիճակը յայտնեցինք յուսալով՝ որ շնորհք պիտի գտնանք ձեր յարգութեանը առջևը մեր դատաստանը իրաւամբ տեսնալու. բայց մինչև հիմա մեր ակնկալութեանը չէ հասնելով, և տեսնալով որ օր քան զօր մեր վրայ եղած անիրաւ բռնութիւնը կը սաստկանայ. մանաւանդ նախ[illegible]նիս՝ անձերնիս՝ ապրուստներնիս՝ զաւակներնիս՝ և ընտանիքներնիս վտանգի մէջ կը տեսնանք.

և յանցանքներն ալ մէկ քանի շահախնդիր մարդոց մտքին մէջէն 'ի զատ վճռուած չէ, ոչ կրօնական և ոչ քաղաքական ատեանով: Ուստի կրկին կը պարտաւորիմք ձեր բարեպաշտութեանը բողոքել և պարզապէս կը ծանուցանեմք ձեզի, որ մենք տասնեւիններորդ Դարուն մէջ կը դատապարտուիմք ոչ մէկ յանցանքով մը՝ այլ միայն տեառն մերոյ Յ՜ի Ք՜ի ցրցուցած անմոլար ճամբուն մէջ քալելնուս համար. Նորէն կ'ըսեմք, ոչ քաղաքական և ոչ կրօնական ատեանը վճռուած է մեր դատապարտութիւնը: Մենք աղէկ գիտեմք որ մեր սիրելի Ազգին մէջ թէ յարգի ազգապետաց և թէ հասարակութեան մէջ անհամար անձինք կան՝ որ սաստիկ կը ցաւին այս անիրաւ բռնութեանը վրայ և կը զզուին այս սոսկալի անգթութեանը վրայ: Մենք բնաւ մեր սիրելի Ազգէն գանգատ մը չունիմք: Մենք գիտեմք՝ որ աս բաներուն հեղինակը մէկ քանի օտար հողմերէ շարժուած խռովասէր անխիղճ մարդիկ են, որ սրբազան Պատրիարքին միտքը իրենց գրաւելեն այս բաները ընել տալու և բարեմիտ հասարակութիւնը կը գրգռեն մեր վրայ [illegible] յարուցանելու. անանկ մարդիկ՝ որ քանի մը տարի առաջ ալ միամիտ հասարակութիւնը գրգռեցին յարգի Ազգապետներուն դէմ գանգատ ընելու Բարձրագոյն դրանը. և Ազգին բարի անունը կոտրելու վտանգին մէջ դրին օտար ազգաց առջեւ: Մենք աս ալ գիտնալով աղէկ կը ծանուցանեմք ձեր արժանապատուութեանը՝ որ այս փոթորիկը արեւելեան քաղցրաշունչ հողմէն շնչուած չէ. Հայոց ազգը ինքիրմէն առիթ տուած չէ իր խաղաղասէր համբաւը վտանգի մէջ դնել այս բաները ընելով. այլ արեւմտեան դառնաշունչ հողմէն կը շարժի կոր. որ ներկայ դարու մէջ անգամ մըն ալ փչելով Ազգը երկուքի պառակտելու: Մեր աղաչանքը ձեր աստուածասիրութեանը այս է, որ ձեր խաղաղասէր բնաւորութեամբը և Աստուածային բնաւորութեամբը թող չտաք որ ձեր խոնարհ Ազգայինքը մէկ քանի

մարդոց անխտրել ամբարտաւանութեանը և ծուռ դատողութեանը զոհ ըլլան. և աղէկ ճանչնաք ու որոշէք Ազգին բարեկամները ու թշնամիները։

Մնամք ձերդ մարդասիրութեան կարօտեալ աղօթող ծառայք՝

Հալածեալ քրիստոնեայքս։

Պոլիս. 1846 Յունվար 31

Այս գրովս՝ ինչպէս որ կը հասկըցուի իրենց համար դատաստան և արդարութիւն պահանջելով՝ իմացընել կ'ուզեն որ մինչեւ հիմա իրենց դէմ եղածը անիրաւութիւն է։

Իրենց դէմ բան եղած չըլլալը ասկէց առաջ եղած յայտարարութեանը մէջ իմացուցինք. և որովհետեւ անիկայ անոնց ձեռքը չի հասած անոնք ալ ճապարեր այս բողոքս ըրեր են. ուստի իրենց ըսածին մէկ մասին պատասխանը մեր առաջին յայտարարութեանը մէջ կը գտնեն. ուրիշ պէտք եղածները այս տեղս կը դնեմք. բայց առաջկուց այս ծանուցանեմք, որ քանի մը անձնական և մասնաւոր բաներ գրած են իրենց բողոքոյն մէջ. որպէս թէ սրբազան Պատրիարքը քանի մը խռովասէր և անխիղճ անձինքներէ գրգռելով իրենք կը հալածէ եղեր. այս մարդիկներս օտար

հովերէ շարժըված են եղեր․ առաջկուց ալ ազգին մէջ խռովութիւն հաներ են և այլն ։

Նմանկ ամբաստանութեանց վրայ բան խօսելու չեմք պարտաւորիր․ քանզի մեր միտքը սրբազան Պատրիարքին ատոնց վրայօք բռնած եղանակը և կերպը ինչ ըլլալը հասկըցընել է․ այս և այն մարդիկ խռովասէր են կամ խաղաղասէր, անիկայ քննելը մեր նպատակէն դուրս է․ և ուզէինք ալ նէ չէինք կըրնար այն մասնաւորաց վրայ բան խօսիլ․ որովհետեւ անոնց ով ըլլալնին չեմք գիտեր ։ Նշան մը ցըցուցեր են, թէ սրբազան Պատրիարքը գըրգըռող մարդիկն են ատոնք․ բայց այս նշանով անհնարին է մարդ գուշակել․ որովհետեւ սրբազան Պատրիարքը այս բանս ընելու գըրգըռող չի կայ․ ինքը իրեն պարտականութիւնը կը կատարէ կոր ժողովուրդը պահպանելով օտարաձայն պէսպէս վարդապետութիւններէն․ գանք ուրիշ խօսքերնուն ։

Կ՚ըսեն․ « Օր քան զօր մեր վրայ եղած անիրաւ բռնութիւնը կը սաստկանայ » ։ Կը պատասխանեմ․ այդ օր քան զօր սաստկանալը մենք չեմք գի-

տեր. քանզի սկիզբէն սրբազան Պատրիարքը ինչ եղանակ բռնած էր հաւատացեալ ժողովուրդը օտար վարդապետութենէն զգուշացընելու նէ՝ նոյնը պահեց անփոփոխ. և մինչեւ հիմա նոյնն է. ո՛չ աւելցուց և ո՛չ պակսեցուց: Այս եղանակիս անունը բըռնութիւն ընողներուն հարկ է ասանկ խօսքերով բօղոք ընելէն առաջ՝ բըռնութ̄ի բառին նշանակութ̄իը սորվիլ:

Բռնութիւն կ՚ըսվի այն գործոյն որ մէկ մարդու մը ազատութեան դէմ է: «Մեր վրայ բռնութիւնը կը տատ„կանայ„ ըսող մարդոցը ազատութենը ո՛չ դպչող կայ և ո՛չ դպչելու միտք ունեցող կայ. ինչպէս որ մէկ մարդ մը սուտ խօսի, և ես այն մարդուն համար ուրիշ մարդոց իմացընեմ որ այն ինչ մարդ ստախօս է, անոր խօսքին չի հաւատան, ստախօսին վրայ բռնութիւն ըրած չեմ ըլլար՝ անիկայ միշտ ազատ է ուզածին չափ սուտ խօսելու. բայց ինքն ալ ուրիշին կամացը վրայ բռնութիւն չի կրնար բանեցընել. ուրիշներն ալ ազատ են անոր ըսածը իրաւի տեղ ընդունելու, կամ իբրեւ սուտ՝ հերքելու: Ու երբ որ այն մարդուն ստախօս

ըլլալը օրէ օր համբաւելով՝ իրեն խօս-
քը ճշմարիտ սեպողներուն համրանքը
օրէ օր պակսին, իրեն խօսքը մտիկ ը-
նողները օրէ օր անկէ երես դարձընեն
նէ, իրաւունք չունենար այն ստախօ-
սը բողոքելու, թէ «օր քան զօր մեր
» վրայ եղած բռնութիւնը կը սաստկա-
» նայ»։ Սրբազան Պատրիարքին ըրածն
ալ՝ որ ատոնք բռնութիւն կը կարծեն,
ատոր պէս է. հասարակութեան կը ծա-
նուցանէ որ այս նորաղանդները որ ս՟բ
գիրքէն զատ մեզի հաւատոյ կանոն
չեմք ճանչնար կ'ըսեն, սուտ վարդա-
պետութիւններ ունին. դաւանու՟ինին
Քրիստոսական ընդհանուր եկեղեցւոյ
ունեցած հաւատքին դէմ է. և պար-
զամիտները և տգէտները ատոնց վար-
դապետութեանը ականջ դնելով կը
խաբուին. կը մոլորին և հոգինին կոր-
սուելու վտանգի մէջ կ'իյնայ. հաւա-
տացեալ ժողովուրդը ասիկայ լսելով՝
իրեն ազատ կամօքը ատոնց հետ տե-
սութիւն չըներ. առուտուր չըներ.
մէկ տեղ չի բնակիր. և այս ալ սրբազան
Յովհաննէս աւետարանչին պատուի-
րանին կատարումն է. որ կ'ըսէ, թէ որ
մէկը ձեզի գայ ու այս վարդապետու-

թիւնս չընդունի , անիկայ տուն մի ատ-
նէք . և անոր բարեւ անգամ մի տաք .
և ով որ անոր բարեւ տալու ըլլայ նէ՝
անոր չարութեան գործքերուն հաղորդ
կ'ըլլայ (Բ . Յովհ . ա . 10) ։ Բայց բողոք
ընողներուն ազատութիւնը ասով ամե-
նեւին չի փնասվիր . ուզած տեղերնին
կրնան երթալ ։ իրենց հաւնած հա-
ւատքնին կրնան բռնել . իրարմէ զատող
չի կայ . իրարու հետ կրնան տեսութի
և ընտանութիւն ընել . և այլն ։

Կ'ըսեն որ , « Յանցանքնիս ալ մէկ
» քանի չահախնդիր մարդոց մտքին մէ-
» ջէն 'ի զատ վճռուած չէ՛ , ոչ կրօնական
» և ոչ քաղաքական ատեանով » ։ Ասոր
պատասխան տալու տեղը մենք ալ կը
հարցընեմք . ասոնց յանցաւոր ըլլայէն
որի՞ ինչ չահ կ'ըլլայ , և անմեղութինին
որի՞ փնաս կը բերէ . արդեօք կրնայ՞ ըլ-
լալ որ մէկը յանցաւոր ըլլայ նէ մէկ
ուրիշի մը չահ ծագի . կամ մէկը ան-
մեղ ըլլայ նէ՝ ուրիշ մը անոր անմեղու-
թեամբը փնասվի ։ Կան անանկ դիպ-
ուածներ . բայց կարծեմ թէ այս խօսքս
դրողներուն դիտաւորութիւնը անոնց
վրայ չէ՛ . զորօրինակ . մէկ մարդ մը շատ
ըստակ վաստըկելու պաշտօնի մը վրայ

կը գտնըվի . ուրիշ մը նոյն պաշտօնին աչք ունենալով անոր վըայ յանցանք մը կը ձգէ , զրպարտութիւն մը կ'ընէ , որ այն պաշտօնէն այն մարդը ձըգվի , և ինքը անոր տեղը անցնի : Բողոքողները իրենք ալ գիտեն որ ասանկ շահաւոր բան մը չի կայ իրենց ձեռքը՝ որ ուրիշները անոր աչք զարնելու համար իրենց վրայ յանցանք ձըգեն : Այս որ չըլլայ նէ՝ չգիտեմք ինչ շահախնդիր մարդու միտք կրնայ մտնել ասոր մէջ : Բողոքվողներուն ունեցածը առնել և անոր համար ամբաստանութի ընողին տալ չկայ . որ ասոնց վրայ յանցանք դնողը այս երեսէն մէկ շահ մը գտնելու ակընկալութիւն ունենայ : Թէ որ այն բողոքման գիրը գրողը այդ խօսքը մըտածմամբ գրած է նէ՝ կ'ուզէինք իմանալ թէ ինչ շահ է ըսածը :

Ինչ և իցէ կ'ըսեն որ՝ յանցանքնիս ասոնց մտքին մէջէն 'ի զատ վճռուած չէ : Այս ասով կրօնական և քաղաքական ատեան կ'ուզեն : Հիմա աշխարհքի մէջ տեսանելի եկեղեցին կը սխալի ըսելը իրենց մոլորութեանը հիմն բըռնող՝ և Քրիստոսական ընդհանուր եկեղեցւոյ դաւանութենէն զատվիլը ի-

րենց բնաւ խիղճ չընող մարդիկը կրօնական ատեան կ'ուզեն նէ մտքերնին ինչ է ։ Կրօնական ատեան ըսելն ու եկեղեցական ժողով ըսելը արդեօք մէկ նշանակութիւն ունին ատոնց մտքին մէջը, թէ այլ և այլ նշանակութիւն ունին ։ Թէ որ այս երկուքս այլ և այլ նշանակութիւն ունին նէ՝ կրօնական ատեան ըսածնին նոր բան պիտի ըլլայ․ և եկեղեցին նոր բան չընդունիր ։ Թէ որ եկեղեցական ժողով ըսել է նէ՝ ատոնց աղանդը նոր հնարված աղանդ մը չէ, որ նոր ժողովք և նոր քննութիւն ըլլալու կարօտ ըլլայ ։ Ըսենք թէ հիմա մէկը ելլէ և Արիոսի մոլար վարդապետութիւնը քարոզէ, այն մարդուն համար նորէն ժողովք ընել պէտք է մի՞ Բաւական չէ՞ր մի անոր վարդապետութեան մոլորութիւնը դատելը. Համար Նիկիոյ ժողովոյն դատաստանը, որ թէպէտ ասկէց 1520 տարի առաջ եղած է, բայց ճիշդ այն մարդուն դէմ է․ քանզի քննըվելիքը և դատապարտըվելիքը այս կամ այն մարդը չէ, անոր ըրած վարդապետութիւնն է ։

Աւասի հիմա մենք ալ ատոնց համար եղած կրօնական ատեաննները կամ եկեղեցա-

կը գտնըվի. ուրիշ մը նոյն պաշտօնին աչք ունենալով անոր վրայ յանցանք մը կը ձգէ, զրպարտութիւն մը կ'ընէ, որ այն պաշտօնէն այն մարդը ձըգվի, և ինքը անոր տեղը անցնի: Բողոքողները իրենք ալ գիտեն որ սանկ շահաւոր բան մը չի կայ իրենց ձեռքը՝ որ ուրիշները անոր աչք զարնելու համար իրենց վրայ յանցանք ձըգեն: Այս որ չըլլայ նէ՝ չգիտեմք ինչ շահախնդիր մարդու միտք կրնայ մտնել ասոր մէջ: Բանըվորներուն ունեցածը առնել և անոր համար ամբաստանութի ընողին տալ չկայ. որ ասոնց վրայ յանցանք դնողը այս երեսէն մէկ շահ մը գտնելու ակընկալութիւն ունենայ: Թէ որ այն բողոքման գիրը գրողը այդ խօսքը մըտածմամբ գրած է նէ՝ կ'ուզէինք իմանալ թէ ինչ շահ է ըսածը:

Ի՞նչ և իցէ կ'ըսեն որ՝ յանցանքնիս ասոնց մաքին մէջէն 'ի զատ վճռուած չէ: Այս առով կրօնական և քաղաքական ատեան կ'ուզեն: Հիմա աշխարհքի մէջ տեսանելի եկեղեցին կը սխալի ըսելը իրենց մոլորութեանը հիմն բըռնող՝ և Քրիստոսական ընդհանուր եկեղեցւոյ դաւանութենէն զատվիլը ի-

րենց բնաւ խիղճ չըներ մարդիկը կրօնական ատեան կ'ուզեն նէ միջերնին ի՞նչ է ։ Կրօնական ատեան ըսելն ու եկեղեցական ժողովք ըսելը արդեօք մէկ նշանակութիւն ունին ատոնց միջին մէջը, թէ այլ և այլ նշանակութիւն ունին ։ Թէ որ այս երկուքս այլ և այլ նշանակութիւն ունին նէ՝ կրօնական ատեան ըսածնին նոր բան պիտի ըլլայ. և եկեղեցին նոր բան չընդունիր ։ Թէ որ եկեղեցական ժողով ըսել է նէ՝ ատոնց աղանդը նոր հնարված աղանդ մը չէ՛, որ նոր ժողովք և նոր քննութիւն ըլլալու կարօտ ըլլայ ։ Ըսենք թէ հիմա մէկը ելլէ և Արիոսի մոլար վարդապետութիւնը քարոզէ, այն մարդուն համար նորէն ժողովք ընել պէտք է մի՞ Բաւական չը՞լլար մի անոր վարդապետութեան մոլորութիւնը դատելու համար Նիկիոյ ժողովոյն դատաստանը, որ թէպէտ ասկէց 1520 տարի առաջ եղած է, բայց ճիշդ այն մարդուն դէմ է. քանզի քննըվելիքը և դատապարտըվելիքը այս կամ այն մարդը չէ՛, անոր ըրած վարդապետութիւնն է ։

Ուստի հիմա մենք ալ ատոնց համար եղած կրօնական ատեանները կամ եկեղեցա-

կան ժողովքները նշանակեմք , որ ա-նոնք հոն դատված ու դատապարտը-ված են ։

Քանի Աստուծոյ տեառն մերոյ ծնող սուրբ կոյս Մարիամին Աստուածածին չըսելնուն համար Նեստոր հերետի-կոսին հետ դատված և դատապարտը-ված են Եփեսոսի ժողովքին մէջ՝ Քը-րիստոսի 431 թուին . և ժողովոյն խօս-քըն է այս . « Եթէ ոք ոչ խոստովա-» նեսցի եթէ Աստուած է ըստ ճշմար-» տութեան Էմմանուէլ , և վասն այ-» նորիկ Աստուածածին զսուրբ կոյսն » ծնեալ ըստ մարմնոյ զմարմնացեալ Բա-» նըն ած , նզովեալ եղիցի » ( Կիւրղէ պարապմանց . Երկր . 477 ) ։ Ու նոյն ժողո-վոյն վճիռը հաստատեց սուրբն Սահակ պարթև յամի տեառն 435 , Աշտիշատ քաղաքը ազգային ժողովով ։ Ուստի սուրբ Մարիամ կուսին Աստուածածին չըսողը՝ արդեօք ինչ մտքով չըսեր , կամ չըսելու իրաւունք մը ունի՞ մի ըսելով նորէն կրօնական ատեան յօրինելու և հար-ցափորձ ընելու կարօտութիւն չիկայ . մէկ մարդ մը սուրբ կուսին Մարիա-մայ Աստուածածին անունը տալ չու-զէ նէ նզովեալ է առաջ ալ՝ հիմա ալ՝ և մինչև աշխարհքիս վերջն ալ ։

Եկեղեցւոյ սուրբ խորհուրդները և արարողութիւնները կ'անարգեն. Քրիստոսի սուրբ խաչը և սրբոց պատկերները հեթանոսաց կուռքերուն կարգը դնելով եկեղեցին կռապաշտութե՟ մէջ ինկած է կ'ըսեն. և ասոր համար Պօղիկեան ըսուած աղանդաւորներուն պէս են, որ Ներսէս Գ. Հայոց կաթուղիկոսին ատենը՝ Քրիստոսի 655 թուին՝ Հայաստան երեւան ելլալով, կաթուղիկոսը իրեն պարտականութեանը համեմատ շատ խրատներ տուաւ անոնց. և երբ որ անուղղելի մնացին, քաղաքական իշխաններուն իմացուց, որ Հայաստանէն հալածեցին. Վաթսուն տարի մը ետքը՝ Քրիստոսի 717 թուին վերստին Հայաստան երեւեցան. և Յովհան Գ. իմաստասէր հայրապետը՝ որ Օձնեցի անունով կը ճանչցուի, Դուին քաղաքը ժողով ընելով Քնի 719 թուին քննեց անոնց վարդապետութիւնը և նզովեց. և նոյն ժողովքին երեսուներկուերորդ կանոնին մէջ պատուիրեց ինչ որ հիմա սրբազան Պատրիարքն ալ ժողովուրդին կը պատուիրէ։

Դուինոյ ժողովքին խօսքն է այս. « Ոչ է պարտ 'ի չարաղանդ մրծղնէիցն

» տեղիս որ կոչին Պօլլիկեանք, օծել
» ումեք, (ըսել է տուներնին նըս-
» տել) և կամ յարել և խօսակից լի-
» նել, և երթեւեկութիւնս առնել.
» այլ ամենեւին հեռանալ 'ի նոցանէ,
» գարշել և ատել զնոսա, զի որդիք սա-
» տանայի են և լուցկիք յաւիտենական
» հրոյն, և օտարացեալ են 'ի սիրոյ կա-
» մաց տերարչին. եթէ ոք իցէ՝ որ յա-
» րեսցի 'ի նոսա, և 'ի սիրելութիւն
» և 'ի բարեկամութիւն եկեսցէ, պարտ
» է զայնպիսին խոշտանկել, և ծանր
» պատուհաս 'ի վերայ ածել, մինչեւ
» զգաստասցին և առողջասցին 'ի հա-
» ւատս. ապա եթէ դարձեալ վերըս-
» տին 'ի նմին գտցին, զայնպիսին հը-
» րամայեմք ամենեւին հատանել և ար-
» տաքս ընկենուլ իբրեւ զժանտախտ
» յանդամոց եկեղեցւոյ Քրիստոսի.
» զի մի արմատ դառնութեան 'ի վեր ե-
» րեւեալ նեղիցէ և նովաւ բազումք
» պղծիցին »(Եբր. ժբ. 15.)։ (Կանոն. լբ.
Տարբնագրութիւնք. (Յովհ. Իմաստ. Եղբ. 74)։
Խոշտանկել և ծանր պատուհաս 'ի վերայ ածել
ըսածը աշխարհական բռնութիւն չէ
նշանակեր. եկեղեցական պատիժ ըսել
է. որ է ապաշխարութեան գործքեր.

ինչպէս որ հին կանոնները կ'իմացունեն. և յայտնի է ասիկայ մէկ մը՝ որ այս պատիժներուն ամէնէն ծանր և վերջին կը դնեն եկեղեցիէն բոլորովին կտրել նետելը. և մէկ մըն ալ՝ որ եկեղեցիէն դուրս գանըվող աղանդաւորին համար պատուհասի խօսք չկայ. միայն եկեղեցւոյ մէջ գտնըվելով անոնցմէ ալ չի զատվողներուն համար է. որչափ Պատրիարքն ալ ասկէց աւելի բան ըրած և ընելիք չունի. Սակայն մը ետքը նորէն երեւեցան Հայաստանի մէջ, որ մկրտութիւնը և պատարագը և մեռոնը չէին ընդունէր. և ոչ խաչը կ'անարգէին. Քրիստոսի 847 թըւին՝ Յովհաննէս Ե. Աւայեցի կաթուղիկոսը ասոնց վրայ աղէկ քննութիւն ընելէն ետքը նզովեց.

Հարիւր տարի ետքը՝ Անանիա կաթուղիկոսին օրը նորէն երեւեցան. և ասոնց դէմ Անանիա Նարեկացին՝ և Վրթանէս քերթողը զատ զատ ճառեր գրեցին, և սուրբ Գրիգոր Նարեկացին ալ իրեն աղօթագրքին մէջ եկեղեցւոյ և սրբալոյս միւռոնի և ժամահարին ճառերը գրեց. Յիսուն վաթսուն տարի մըն ալ ետքը Սարգիս կա-

Թուղիկոսին որը միջադետաց կողմերը երեւեցան. եւ ասոնց դէմ Հարք գաւառը ժողովք եղաւ, Քի 1051 Թուին. եւ դատապարտեցան: Այս մոլորութիւներուս ամէնուն ալ հեղինակը օտար ազգէ են. քանզի Մանիքեցւոց աղանդոյն փոփոխութիններն են. եւ Մանի՝ պարսից երկրէն էր: Ասոնց մոլորութեան մէկ մասը Յունաց մէջ ալ մտաւ. եւ քանի մը կայսերք ալ այս մոլորութենս հետեւեցան. պատկերները կը կոտրըտէին խաչերը կամ կը կտրըտէին կամ կը հալեցընէին: Կրօնաւորները վանքերէն դուրս հանելով կը բռնադատէին որ կամ զինուոր ըլլան կամ արուեստաւոր. սրբոց մասունքը կրակը կը նետէին, եւ այլն: Ասոնց դէմ ալ կրօնական ատեան եղաւ Նիկիոյ Բ. ժողովքը, Քրիստոսի 787 Թուին. քանի մը եպիսկոպոս ալ մեր ազգէն գտնըվելով, մոլորութիւնները քննեցին եւ դատապարտեցին: Այսքան կրօնական ատեաններով եղած քննութիւններէն եւ դատապարտութիւններէն ետքը ասոնց ուզած դատաստանը ինչ է: Թէ որ կ'ըսեն որ մենք ոչ նեստորական եմք, ոչ պօղիկեան, ոչ Թոնդրակեցի, եւ ոչ պատ-

կերամարտ, ուստի այդ նզովքները մեզի չեն վերաբերիր. պատասխան կուտամ թէ սանք նեստորական կամ պօղիկեան կամ թոնդրակեցի ըսւելնուն համար չի դատապարտեցան, այլ ունեցած մոլորութիւններնուն համար. քանզի լոկ անունը մարդը դատապարտելի չըներ։

Կ'ըսեն որ՝ «տասնեւիններորդ դարուն մէջ կը դատապարտըվիմք»։ Աւ մեք կ'ըսեմք թէ՝ դարուն տասնեւիններորդ կամ քսաներորդ ըլլալը դատապարտելի մոլորութիւնը ճշմարտութիւն չըներ։ Այն վարդապետութիւնն որ հինգերորդ եւ ութերորդ եւ իններորդ եւ այլն դարերուն մէջ դատապարտելի էր նէ ամէն դարու մէջն ալ դատապարտելի է։ Այլ իրենք քանի՞երորդ դարուն մէջն են որ բոլոր քրիստոնեից եկեղեցիները կուապաշտութեան մէջ ինկան ըսելով կը դատապարտեն։ Քանի՞ երորդ դարուն մէջն են որ եկեղեցւոյ հայրապետներուն վրայ տեսակ տեսակ անհիմն զրպարտութիւններ հանելով կը դատապարտեն։ Արդեօք տասն եւ իններորդ դարը ատոնց անանկ արտօնութիւն մը կուտա՞յ մի որ ուզած մարդերնին դատապարտեն, եւ իրենք ազատ

Յեան հինգերորդ դարէն 'ի վեր կրօնա-կան ատեանով և վճիռով իրենց սըր-ված դատապարտութիւն ։ Մենք աստ-ուածային ճշմարտութիւնը ժամանակի կապել չեմք գիտեր . Քրիստոս չըսաւ-թէ՝ մէկը եկեղեցիին չի լսէ նէ՝ մինչեւ-տասն և իններորդ դարը հեթանոսի և մաքսաւորի պէս սեպվի , անկէց ետքը ուղղափառ քրիստոնէի կարգը անցնի ։ Այլ առանց ժամանակի որոշում տա-ըու՝ Եղիցի քեզ իբրեւ զհեթանոս և զմաքսաւոր ըսաւ (Մատթ. ժը. 17)։ Գիտենք թէ որքան առաքեալն ալ այդպիսի ան-միտ զրուցվածքները գուշակելով ըզ-գուշացուցեր է հաւատացեալները , որ կ'ըսէ . « Զաւուրս խտրէք և զամիսս » և զժամանակս և զտարիս » (Գաղ. դ. 10)։ Նաև ուրիշ տեղ մը կ'ըսէ նոյն սըր-բազան առաքեալը . « Յիսուս Քրիս-» տոս երեկ և այսօր , նոյն և յաւի-» տեանս ։ Յուսմունս պէսպէս և յօ-» տարաձայնս մի դանդաչէք » (Եբր. ժգ. 8. 9)։ Թէ որ այդ բողոքող գիրք գրողները այնպէս կարծեցին՝ որ հինա-ւանդութիւններու դարուն մէջն եմք , պէս պէս և օտարաձայն ուսմունքներու մէջ դանդաչելու ազատութիւն ունիմք ,

մեզի դատապարտութի՛ն չըլլար, խաբուած են. պատճառն որ՝ «Յիսուս Քրիստոս երեկ և այսօր, նոյն և յաւիտեանս». ժամանակով փոխուելիք չունի. և հոգեւոր իշխանութիւնն ալ՝ որ Քրիստոս հաստատած է՝ Քրիստոսի պէս անփոփոխելի է. քանզի այն եկեղեցին՝ որուն մէջ Քրիստոս հաւատացելոց չինուէ համար առաքեալ, մարգարէ, աւետարանիչ, հովիւ և վարդապետներ դրաւ (Եփես. դ. 11), դժոխքին դռներէն անգամ չի պիտի յաղթուիլ. թող թէ տասնևիններորդ դարէն. որ ինքնին բան մը չէ՛, միայն ժամանակի չափ մըն է։

Դատապարտուելնուն պատճառն ալ իրենց խելքովը գտեր են. կ'ըսեն թէ՝ «Մը դատապարտուիմք ոչ մէկ յանցանքով մը, այլ միայն տեառն մերոյ Յիսուսի Քրիստոսի ցըցուցած անմոլար ճամբուն մէջ քալելնուս համար»։ Կը հարցընեմ ասոնց թէ Քրիստոս այդ անմոլար ճամբան ո՞ւր տեղ ցըցուցեր է ասոնց. հաւատոյ մասին մէկ անմոլար ճամբայ մը կայ՝ Քրիստոսի ընդհանուր եկեղեցին, որուն առաջնորդ տրուած է Հոգին սբ՝

որ ամենայն ճշմարտութեամբ պիտի առաջնորդէ . (Յովհ . ժզ . 13) . ասոնք այս ամենայն ճշմարտութեամբ սուրբ Հոգիէն առաջնորդըված եկեղեցին ձգելէն ետքը՝ ամէն մարդ ինք իր գըլխուն սուրբ գիրքը կարդալով, և միտքը հասկընալու համար իր խելքը իրեն առաջնորդ բռնելով, իրեն խելքին ցըցուցած ճամբան ի՞նչպէս անմոլար կրնայ կոր ըսել . և ասով ի՞նչպէս ինքըզինքը Հոգւով սրբով առաջնորդըված եկեղեցիին ճամբան երթալէն աւելի ապահով կը սեպէ ։ Տասն և իններորդ դարը մտքի լուսաւորութեան դար է . ասոնք այս կողմէն տասն և իններորդ դարու մարդիկ չեն նմանիր . որովհետեւ ասանկ յայտնի բաները չեն կրնար կոր որոշել . կը կարծեն որ՝ դարուն տասն և իններորդ ըլլալը՝ միայն իրենք անդատապարտ ընելու համար է . աստուածային և մարդկային գիտութեանց մէջ յառաջադէմ ըլլալու և ուղիղ տրամաբանելու համար չէ ։

Ի՞նչպէս չեն տեսներ՝ որ այդ ճամբով հարկ կ'ըլլայ իրենց ամէն մէկուն ըսել, թէ Քրիստոսի օրէն մինչեւ հիմա բոլոր աշխարհք որքան քրիստոնեայ

կան՚նէ ամէնն ալ մոլորութեան ճամ-
բան ինկած են . միայն իրենք են գտեր
այն անմոլար ճամբան . և այն՝ ալ ին-
չո՞վ . Նոյն իսկ տեսաւն մերոյ վարդա-
պետութիւնը , որ ամէն քրիստոնեայք
գիտեն և կը կարդան . բայց չիտակ հաս-
կընալը միայն ասոնց տրված է եղեր .
այն ալ ամէնուն մէկէն չէ՛ . ամէն մէ-
կուն զատ զատ . որովհետեւ մէկը մէ-
կալին համաձայնելու պարտականու-
թիւն չունին . անանկ որ՝ Քրիստոսի
խօսքին մէջը՝ " Որ ոչ ծնցի 'ի ջրոյ և 'ի
" հոգւոյ " եւայլն ( Յովհ . գ . 5 ) ջուր բա-
ռը մէկը իսկական ջուր կը կարծէ , մե-
կը շնորհք ըսել կը կարծէ . երկուքն ալ
կ'ըսեն որ Քրիստոսի ցըցուցած անմո-
լար ճամբու մէջ կը քալեն ։ Աստի այդ
խօսքով այդ մարդիկը իրար խաբելու
ալ կարողութիւն չունին . միայն իրենք
զիրենք կը խաբեն . եկեղեցւոյն առաջ-
նորդող սուրբ Հոգիէն զուրկ ըլլա-
նուն համար Քրիստոսի ցըցուցած ան-
մոլար ճամբան ալ չեն կրցած գտնելու ։

Կ'ըսեն որ , " Մենք աղէկ գիտեմք
" որ մեր սիրելի ազգին մէջ թէ յարգի
" ազգասպետաց և թէ հասարակութե
" մէջ անհամար անձինք կան որ սաստիկ

» կը ցաւին այս անիրաւ բռնութեանը
» վրայ . և կը զզուին այս սոսկալի ան-
» գթութեանը վրայ » . Ճշմարիտով և
սխալով խառն զրուցվածք մըն է այս ,
և պարզել պէտք է ։ Յիրաւի չէ թէ մի-
այն անհամար անձինք ազգին մէջէն ,
այլ ազգը բոլոր կը ցաւի ասոնց վրայ .
և ասոր նշանն է՝ որ ասոնց եկեղեցի-
էն դուրս ըլլալնին հասարակութեան
ծանուցում տրված օրը եկեղեցւոյ մէջ
սեղանին վարագոյրը կը քաշվի , որ սը-
գոյ և տրտմութեան նշան է . ինչպէս
որ մեծ պահոց ապաշխարութեան օրե-
րըն ալ նոյն վարագոյրը քաշված մնալը
ասոր համար է ։

Բայց ցաւելնին դուրսէն ասոնց վը-
րայ եղած բռնութեանը և անգթու-
թեանը վրայ չէ . քանզի անանկ բան
չիկայ՝ որ անոր համար ցաւի . եկեղե-
ցին մայր գթած իր մոլորեալ որդւոցը
վրայ կը տրտմի . կ'արտասուէ , ինչպէս
որ Քրիստոս ալ Երուսաղէմ քաղաքին
վրայ արտասուեց . և անոր ըսածին պէս
ինքն ալ իրմէ զատվող որդւոցը կ'ըսէ .
« Քանիցս անգամ կամեցայ ժողովել
» զմանկունս քո , զոր օրինակ ժողովէ
» հաւ զձագս իւր ընդ թեւովք , և ոչ

» կամեցարուք » (Առք. Իգ. 37)։ Բայց
թեւերն ալ բացած՝ նոյն զաւկըները
իր գիրկը կը հրաւիրէ. գացողները սի-
րով կ՚ընդունի. և չի գացողներուն վը-
րայ սիրտը շատ ցաւելուն համար իր
գիրկը մնացողները կը խրատէ որ մոլո-
րեալներուն հետ չի տեսնըվին. չըլլայ
որ անոնք ալ մոլորին. և իրեն վերստին
ցաւ և կսկիծ պատճառեն։

Կ՚ըսեն որ, « Այս բաներուն հեղի-
» նակը մէկ քանի օտար հողմերէ շարժը-
» ված խռովասէր անխիղճ մարդիկ են.
» որ սրբազան Պատրիարքին միտքը ի-
» րենց գրաւեր են այս բաներս ընելտա-
» լու. և բարեմիտ հասարակութիւը կը
» գրգռեն մեր վրայ աղմուկ յարուցա-
» նելու ». քիչ մը ետքը կը բացատրեն
թէ այս օտար հովեր ըսածնին ի՞նչ է։
« Կը ծանուցանեմք ձեր արժանապատ-
» ուութեը կ՚ըսեն, որ այս փոթորիկը
» արեւելեան քաղցրասիւք հողմէն շըն-
» չուած չէ՛. Հայոց ազգը ինքիրմէն
» ստիպված չէ՛ իր խաղաղասէր համ-
» բաւը վտանգի մէջ դնել այս բա-
» ներս ընելով. այլ արեւմտեան դառ-
» նաշունչ հողմէն կը շարժի կոր, որ
» ներկայ դարուս մէջ անգամ մըն

» ալ փչելով ազգը երկուքի պառակ-
» տեց » ։ Ասոր կը պատասխանեմ, թէ
դուշակութիւնը ծուռ է. թէ որ ա-
սոր անունը հով և փոթորիկ է դրեր
նէ՝ ատիկա իրեն մտածելու բանն է.
բայց սանկ հերետիկոսները՝ որ եկե-
ղեցին չէ թէ երկուքի կամ երեքի կամ
քառսունի կամ հազարի բաժանելու,
այլ բոլորովին ցրուելու կը նային, ա-
մէն մէկ մարդ ինքիր գլխուն զատ հա-
ւատք հնարելու ճամբու մէջ ձգելով,
իրաւամբք բ̃անադրված են ամէն ա-
տեն Քրիստոսական ընդհանուր եկե
ղեցիէն. հիմա ալ անոնց հետեւող-
ները ընդհանրապէս անընդունելի են
բոլոր քրիստոնէից մէջ ։ Յոյնք չեն ըն-
դունիր և նզովքով կը մերժեն. Ռուսք
չեն ընդունիր, և գիրքերնին Ռուսաց
երկիրը չի ծախվիր. և դրսէն քարոզիչ
չի կրնար մտնել Ռուսաստան այս ա-
ղանդս քարոզելու՝ բայց եթէ ծպտեալ
կերպարանօք (թէպտիլ), և զինքը չի
գիտցընելով ։ Անգղիացիները անգամ
այս նորաղանդներուն Տիսէնդըր ա-
նուն տալով՝ բուն անգղիական եկե-
ղեցւոյ անդամ եղողներուն շնորհված
քաղաքական արտօնութիւններէն զըր-

կած էին . միայն այս մէկ քանի տար-վանս մէջ թոյլտուութիւն ըրին իրենց կրօնքին պաշտօնը համարձակ կատարելու ։ Եւրոպայի գրեթէ ամէն տէրուի, թէ՛ հռոմէական և թէ՛ բրօթէսթան, իրենց կրօնքէն դուրս կրօնք թէ՛ քարոզողներուն և թէ՛ ընդունողներուն արգելք դրած են . որ չեն կրնար համարձակ քարոզել և իրենց կրօնքին մարդ դարձընել ։ Շատ տարի չըներ որ Շվէտու երկիրը Նիլսօն անուն պատկերհան մը բրօթէսթանութիւնը ձգել և հռոմէական ըլլալուն համար Շվէտու երկրէն աքսորեցին ։ Նոյն իսկ մէթօտիստները երբ որ Դաւիդի կղզին բաւական հեղինակութի ստացան նէ՝ հռոմէական քարոզիչները անկէց դուրս ընել տուրին թագաւորին , և օրէնք ալ դրին որ այն տեղի քրիստոնեաները ինչ գիրք պիտի կարդան նէ՝ առաջ այն տեղի մէթօտիստ քարոզիչին ցըցընեն և անկէց հրաման առնեն . և այս պատուէրիս դէմ ընողին պատիժ կապեցին ։ Ասոնք տասն և վեց կամ տասն և եօթներորդ դարու բաներ չեն . տարվան մը կամ երկու տարվան բաներ են որ Եւրոպայի լրագիրները կը պատմեն ։ Եւ

այս տարի Պրուսիայի երկիրը՝ որ բրօ-
թէսթան է, և Աւստրիայի երկիրը՝ որ
հռոմէական է, Ռօնկի քահանային և
հետեւողներուն նոր հնարած աղան-
դը քարոզելը արգիլված է ։ Արդեօք ա-
տոնց ամէնուն համար մէկէն կրնա՞ն մի-
այդ բոլորը գրող ինքնահալածները ը-
սել որ արեւմտեան կամ արեւելեան
հովէ եկած փոթորիկներ են ։

Վերը տրված համառօտ տեղեկու-
թիւնովնիս հասկըցուցինք որ քանի ա-
տեն որ պօղիկեանները և Թոնդրակե-
ցիները ազգիս մէջ գլուխ վերուցին՝
ամէն անգամին ալ ժողովքով քանդը-
ըրվեցան ։ Հիմնակված եղածն ալ ու-
րիշ բան չէ․ և ասոր համար արեւել-
քէն կամ արեւմուտքէն հով փչելու
փոթորիկ հանելու կարօտութիւն ալ
չի կայ․ եկեղեցւոյ հովուաց պարտա-
կանութիւնն է, «Յառնէ հերձուածո-
» ղէ յետ միանգամ և երկիցս խրատե-
» լոյ » հրաժարիլ (Տիտոս․ գ․ 10)։ «Մ՛ը-
» խիթարել ողջմտութեամբ վարդա-
» պետութեանն, և զհակառակորդսն
» կշտամբել » (Տիտոս․ ա․ 9։) Այս պար-
տականութիւն կատարելու համար բա-
ւական է որ հոգեւոր հովիւը իմա-

տուն մարդ ըլլայ. և հաւատոյ պաշտ-
պան ըլլայ. ուրիշ տեղաց դրդուեցա-
ւ ասանկ բաներ ընելու ըսելը Թէ ազ-
գին համար՝ և Թէ ազգին հոգեւոր
հովուին համար, նախատինք է. ըսել
է որ՝ ազգը անտարբեր ամէն կրօնքի
տեղի կուտայ, և իրեն անդամ եղող
տկարամիտները Թող կուտայ որ մոլո-
րեցուցիչներուն խօսքին խաբվելով
հաւատքէ մոլորին։ Ըսել է որ՝ հոգե-
ւոր հովիւն ալ անհոգութիւն կ՚ընէ։
Քրիստոսի տեառն մերոյ իրեն հաւա-
տացած ժողովուրդը հովուելը չի գի-
տեր. և գայլը եկածին պէս ինքը կը
Թողու կը փախչի. գայլն ալ անոնք կը
յափշտակէ ու կը ցրուէ (Յովհ. ժ.
12)։ Մեր սրբազան Պատրիարքին պէտք
է որ մեծապէս շնորհակալ ըլլամք բոլոր
Հայոց ազգը. և այս կը հալածվին նոր ը-
սելով բողոք ընող մոլորեալ եղբայրնե-
րը անդամ. քանզի իրեն հայրական խը-
նամքը առ հասարակ ամէնուն վրայ կը
տարածէ. անոնք զիս չեն ուզեր նէ, ես
ալ անոնք չեմ ուզեր ըսելով բարձի
Թողի չըներ. իր եկեղեցական իշխա-
նուԹիւնը բանեցընելով հաւատացեալ
ժողովուրդը կը խնայէ որ անխտիր ա-

նոնց հետ տեսութիւն ընելով անոնց
մոլար վարդապետութեններն թունա-
ւորվելու վտանգի մէջ չիյնան․ բայց
անոնց համար ալ միշտ աղօթք կ'ընէ
առ Ած ; ամէնուն ալ աղօթել կը պատ-
ուիրէ, որ մոլորելոց հոգի զգաստութ̃
տայ, և իրեն ճշմարտութ̃ ճամբան խօթէ
անոնք ։ Ած կ'ըսէ մրգրէին բերանովը․
«Ես փակեցից զճանապարհս նր պատ-
»նիշօք, և առականեցից զճանապարհս
»նորա և զշաւիղս իւր մի գտցէ . . .
»և ասասցէ, երթայց և դարձայց առ
»այրն իմ առաջին․ զի յայնժամ բարի
»էր ինձ քան արդ» (Ովսէէ․ բ․ 6․7)։
Սրբազան հայրն ալ այս ճամբան կը
բռնէ․ մոլորելոց մոլորեցընելու ճամ-
բան կը գոցէ անանկ բանով մը՝ որ ի-
րենց հոգեւոր դեղ ալ է․ քանզի ու-
զեն նէ՝ իրենց խղճին տագնապէն զրով
ատանկ բողոքներ ընելու կըստիպվին
կոր, կ'իմանան որ, թէպէտ զիրենք ի-
րօք հալածող չի կայ, բայց իրենց ա-
նանկ կուգայ որ բոլոր աշխարհ իրենց
դէմ ելեր է զիրենք հալածելու․ ասով
կ'իմանան մծայրին բանին և Քնական ե-
կեղեցւոյն հոգւոյ վրայ ունեցած զօ-
րութիւնը․ կը ճանչնան որ՝ ինչչափ գուռն ար-

քայում է երբ եկեղեցին, որովհետև անկէց կտրըվիլ դուրս նետվիլը իրենցանանկ սաստիկ մորմոք և ցաւ կուտայ կոր որ իրենց վրայ բռնութի և անգթութի բանեցուցածի պէս կուգայ կոր իրենց։ Բայց աս ալ պէտք է գիտնան որ հաւատալէաց վրայօք եկեղեցւոյ վճիռը անփոխելի և անդառնալի է. այն աղանդն որ մէկ անգամ մը եկեղեցիէն մերժըվեցաւ, և հետևողները բանադրվեցան՝ ամէն ատեն նոյն աղանդը մերժըված* է. և անոր հետևողները բանադրըված են. թէ և ամէն ատեն բանադրանքը չի կրկնըվի։ Բանադրանքին վրայէն ժամանակ անցնելով բանադրանքը քակված չըլլար. քանզի մոլորութի մը հնարվելէն ետքը ժամանակ անցնելով այն մոլորութիը ճշմարտութի չըլլար։ Ուստի թէ և սրբազան Պատրիարքը նորաղանդները հիմա չի բանադրեր, վերոյիշեալ ժողովքներուն վճռովը եղած դատապարտութիւնին տակաւին կը տեւէր։ Եւ հիմա ասանկ աղանդաւոր մը իր աղանդէն ետ չի դարձած և եկեղեցւոյ գիրկը չի մտած սըրբազան Պատրիարքը կամ ով և իցէ հոգևոր իշխանութիւն ունեցող մարդ

մը անիկայ եկեղեցւոյ հաղորդութեան
ընդունի նէ, այն աղանդաւորը անով
բանադրանքէն արձակած և եկեղեց֊
ւոյ որդի չի կրնար ըլլալ. անոր համար
այն արձակումը ոչինչ է ։ Ասոնք իմա֊
նալով երանի թէ հաճին վերստին մը
եկեղեցւոյ գիրկը դառնալու, որով
սրտերնին մէկ քաղցր և երանելի խա֊
ղաղութիւն մը տիրէ. իրենց խղճին տագնա֊
պը հանդարտի. ամէնքս մէկ սիրով և
մէկ հոգիով իրարու եղբայր ըլլամք
՚ի Ք՟ս Յ՟ս ։ Ամէնուս ալ իղձը և փա֊
փաքը այս է ։ ամէնքս ալ պարտի մտօք ա֊
ղօթող ըլլամք առ Ա՟ծ այս բանիս համար ։
Կը յուսամք որ այս աղօթիցս պտուղը
վայելելով՝ բոլոր ընտանեօք կասկած
ըրած երկպառակութեան աղաւա կը մը֊
նամք ։ Կ՚աղաչեմք՝ որ սիրոյ և խաղաղու֊
թեան Հոգին՝ որ ամ Ճշմարտութեամբ
սուրբ եկեղեցւոյն կ՚առաջնորդէ, ա֊
սոնց միտքն ալ լուսաւորէ, որ իրենց
խելքին և հասկցողութեան տկարութիւ
ճանչնալով իրենց վստահութիւնը մը
եկեղեցւոյն առաջնորդութեանը վրայ
հիմնեն. և այնպէս զինուորեալ եկեղե֊
ցւոյ հետ միով հաւատով նահատակե֊
լով անդրանկաց եկեղեցին ալ միանալու
ամէնքս մէկէն արժանի ըլլամք Ամէն ։

